Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ





№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:



# ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

Երեսուն մեկ տարի առաջ, 1924 թվականի հունվարի 21-ին, վախճանվեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնադիր և ղեկավար, աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծող, ամբողջ աշխարհի աշխատավորության սիրելի առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Մեծ Լենինի անունը անխզելիորեն կապված է մեր հերոսական Կոմունիստական պարտիայի ամբողջ պատմության հետ, կոմունիզմի հաղթանակի համար մեր երկրի աշխատավորության մղած պայքարի հետ: Լենինի անունը ամբողջ աշխարհի աշխատավորության մեծ դրոշն է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում:

Հանճարեղ կերպով ընդհանրացնելով Ռուսաստանի և արտասահմանյան երկրների բանվորական ռևոլյուցիոն շարժումների փորձը, զարգացնելով մարքսիզմը իմպերիա-

լիզմի դարաշրջանում, Վ. Ի. Լենինը մշակեց ուսմունք պրոլետարիատի ռևոլյուցիոն մարտական պարտիայի մասին, մեր Կոմունիստական պարտիայի մասին։ Վ. Ի. Լենինի ստեղծած Սովետական Միության Կոմունիստական պարտիան նոր տիպի պարտիա է, ռևոլյուցիոն պարտիա, որը հաղթահարելով իր առջև ծառացած բոլոր դժվարությունները, մեր երկիրը տանում է դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը։

Ռուսաստանում նոր տիպի պարտիա ստեղծելու համար Լենինը և լենինյանները վճռական պայքար են մղել պարտիայի բոլոր թշնամիների դեմ, որոնք ձգտում էին բանվորական շարժումը ենթարկել բուրժուական ազդեցությանը։

Դասակարգային պայքարի նոր պայմաններում, կապիտալիզմի կործանման էպոխայում, ստեղծագործորեն զարգացնելով մարքսիզմը՝ պրոլետարական ռևոլյուցիայի հանճար Լենինը կատարեց մեծ հայտնագործություն՝ ստեղծեց և գիտականորեն հիմնավորեց իմպերիալիզմի համաշխարհային շղթան նրա առավել թույլ օղակում ճեղքելու վերաբերյալ ռևոլյուցիոն ուսմունք, որով սոցիալիզմի կառուցումը հնարավոր համարեց սկզբում փոքրաթիվ կամ նույ-



նիսկ մեկ, առանձին վերցրած կապիտալիստական երկրում։ Լենինի այդ հանճարեղ հայտնագործությունը՝ սոցիալիստական ռևոլյուցիայի մասին, ավարտուն, ամբողջական ուսմունք է։ Լենինյան այդ թեորիան առանձին երկրների բանվորների համար բացեց ռևոլյուցիոն նոր հեռանկար, ազատություն տվեց իր ազգային բուրժուազիայի վրա գրոհելու գործում, ամրապնդեց նրանց հավատը պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի նկատմամբ։ Այնուհետև իր Հռչակավոր Ապրիլյան թեզիսներում Լենինը կատարեց նոր հանճարեղ հայտնագործություն, տվեց պրոլետարական դիկտատուրայի պետական ձևի մասին ուսմունքը։ Զարգացնելով մարքսիզմը, Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն ձևը համարեց ոչ թե պառլամենտը, այլ Սովետների ռեսպուբլիկան։

Մեր երկրում սոցիալիզմի կառուցման և Սովետները որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետական լավագույն ձևի լենինյան հանճարեղ հայտնագործությունները մեծագույն նշանակություն ունեցան Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ

ռևոլյուցիան մարդկության համաշխարհային պատմության մեջ բաց արեց նոր դարաշրջան— կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակով Լենինի կողմից ստեղծված Սովետական Միության Կոմունիստական պարտիան ազգային ուժից դարձավ միջազգային, ինտերնացիոնալ ուժ, համաշխարհային ռևոլյուցիոն և բանվորական շարժման հարվածային բրիգադա։

Հանճարեղ Լենինի գլխավորությամբ Կոմունիստական պարտիան մեր երկրի ժողովուրդներին լիակատար հաղթանակի հասցրեց ընդդեմ ամերիկա-անգլիական-ֆրանսիական ու ճապոնական իմպերիալիստական պետությունների ինտերվենտների և սպիտակ-գվարդիականների։ Կոմունիստական պարտիան Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ հսկայական աշխատանք կատարեց Սովետական ռեսպուբլիկաների միավորման, ՍՍՌՄ ստեղծելու համար։ ՍՍՌՄ-ի ստեղծումը լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության խոշոր հաղթանակներից մեկն էր։ Կոմունիստական պարտիան, առաջնորդվելով Լենինի կողմից մշակած տնտեսապես հետամնաց Ռուսաստանը առա-



ջավոր ու հզոր սոցիալիստական պետության վերածելու գիտականորեն հիմնավորված ծրագրով, հասավ վիթխարի հաջողությունների։

Լենինը պարտիային զինեց մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հստակ, գիտականորեն հիմնավորված ծրագրով, որով Սովետական Միության ժողովուրդներին ոգեշնչեց դեպի պատմական մեծ սխրագործություն։ Լենինը պարտիային ուսուցանում էր, որ սոցիալիզմի միակ հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական ինդուստրիան, որն ընդունակ է վերակառուցել նաև գյուղատնտեսությունը։

Վ. Ի. Լենինի մահից հետո, նրա գործի մեծ շարունակող Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ Կոմունիստական պարտիան անշեղորեն կենսագործելով լենինյան պատգամները, պատմական կարճ ժամանակաշրջանում մեր երկիրը դարձրեց հզոր ինդուստրիալ տերություն։ Է՛լ ավելի ամրապնդվեց սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, ժողովուրդների բարեկամությունը, որի շնորհիվ սովետական հասարակական և պետական կարգը դարձավ ավելի կենսունակ։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Սովետական Բանակը

գլխովին ջախջախեց ֆաշիստական ագրեսորներին, Եվրոպայի ու Ասիայի ժողովուրդներին փրկեց ֆաշիստական ստրկացումից։ Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ջախջախել, այսուհետև էլ կջախջախի ամեն մի ագրեսորի, եթե նա համարձակվի խանգարել մեր խաղաղ աշխատանքը։

Անշեղորեն կենսագործելով լենինյան պատգամները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ձեռք բերեց չտեսնված հաջողություններ։ Եթե 1924/25 տնտեսական տարում Սովետական Միությունում ձուլվում էր ընդամենը 1 միլիոն 868 հազար տոննա պողպատ, ապա 1953 թվականին այն արդեն հասավ ավելի քան 38 միլիոն տոննայի։ Այդ նույն ժամանակաշրջանում ածխի հանույթը մեր երկրում աճեց 19 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 45 անգամ։ Եթե 1954 թվականին երկրի արդյունաբերության ամբողջ արտադրանքը, 1940 թվականի համեմատությամբ աճել է 2,8 անգամ, ապա ծանր արդյունաբերության արտադրանքի առանձին վերցրած, այդ նույն ժամանակամիջոցում աճել է 3,4 անգամ։ 1954 թվականին արտադրվել է 3 անգամ ավելի էլեկտրաէներգիա,



քան 1940 թվականին։ Հինգերորդ հնգամյակի չորս տարում գործի են գցվել Վերխնե-Սվիրովի, Ցիմլյանսկի, Ուստ-Կամենոգորսկի, Գյումուշի, Մատկոժինայի, Մինգեչաուրի և մասնակիորեն Կամայի հզոր էլեկտրակայանները։ Բարձր տեմպերով է ընթանում աշխարհում խոշորագույն Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։ Հիդրոէլեկտրակայաններ են կառուցվում Անգարայի, Օբ և այլ գետերի վրա։ Ժողովրդական տնտեսության սպառման առարկաների արտադրությունը Սովետական Միությունում 1924/25 տնտեսական տարվա համեմատությամբ 1953 թվականին աճել է 12 անգամ։

Ծանր արդյունաբերության բուռն վերելքը մեր երկրում պարտիային և կառավարությանը հնարավորություն տվեց մշակելու ժողովրդական սպառման ապրանքների արտադրության բարձրացման լայն ծրագիր, որպեսզի արդեն մոտակա տարիներին լիովին բավարարվեն աշխատավոր մասսաների աճող պահանջմունքները։ 1954 թվականին արտադրվել է ավելի քան 5,5 միլիարդ մետր բամբակե գործվածքեղեն, որը 6 տոկոսով ավելի է, քան 1953 թվականին և 43 տոկոսով ավելի՝ քան 1950 թվականին։ Բրդե

գործվածքներ են արտադրվել 242 միլիոն մետր, որը 17 տոկոսով ավելի է, քան 1953 թվականին և 56 տոկոսով ավելի՝ քան 1950 թվականին։ 1954 թվականին մետաքսե գործվածքներ են արտադրվել ավելի քան 520 միլ. մետր, որը 30 տոկոսով ավելի է, քան 1953 թվականին և 4 անգամ ավելի, քան 1950 թվականին։

Կոմունիստական պարտիան հաղթականորեն իրականացնելով երկրի սոցիալիստական ինդուստրացման լենինյան ծրագիրը, ստեղծեց անհրաժեշտ նախադրյալներ գյուղատնտեսության կոլեկտիվացման համար։ Ղեկավարվելով լենինյան կոոպերատիվ պլանով, պարտիան մեր երկրի ավելի քան 25 միլիոն անհատական-փոշիացած գյուղացիական տնտեսությունները միավորեց հզոր կոլեկտիվ տնտեսությունների մեջ։ Մեր երկրի գյուղատնտեսությունը դարձել է ամենաառաջավոր, ամենախոշոր և մեխանիզացիայի ենթարկված գյուղատնտեսությունը աշխարհում։

1953 թվականի վերջին մեր երկրի մեքենա-տրակտորային կայանները ունեին 969 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), որը 74 տոկոսով ավելի է, քան եղել է մինչև պատերազմը, 255 հազար հացահատիկային



կոմբայն, այսինքն 66 տոկոսով ավելի, քան 1940 թվականին և այլն։

Պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան, Փետրվար-մարտյան և Հունիսյան պլենումների որոշումներում նշված են այն անհրաժեշտ և անհետաձգելի միջոցառումները, որոնք ապահովում են մեր գյուղատնտեսության հետագա զարգացումը։ Պարտիան մեր երկրի գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև անհետաձգելի խնդիր է դրել՝ բարձրացնել մշակվող բոլոր կուլտուրաների բերքատվությունը, յուրացնել խամ ու խոպան հողերի նոր տարածությունները, ավելի լրիվ ու ռացիոնալ օգտագործել գյուղատնտեսական մեքենաներն ու գործիքները, ապահովել անասնաբուծության գլխաքանակի և նրա մթերատվության աճը, կոլտնտեսային արտադրության գործում՝ ուժեղացնել ՄՏԿ-ների դերը և այլն։

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, բացառիկ խանդավառությամբ կենսագործում է սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից մշակված միջոցառումները։ Պարտիայի կոչով 150 հազար որակյալ

բանվորներ, ինժեներներ, ագրոնոմներ ու զոոտեխնիկներ կամովին մեկնեցին աշխատելու խամ ու խոպան հողերի շրջաններում։ Միայն 1954 թվականին մեր երկրի գյուղատնտեսությունն ստացել է 120 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 81 հազար բեռնատար ավտոմոբիլ, 10 հազար կոմբայն, ավելի քան 19 հազար տրակտորային և ինքնագնաց խոտհնձիչ, 9 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, մեծ քանակությամբ նաև այլ մեքենաներ։

Պարտիայի կողմից սոցիալիստական գյուղատնտեսությանը ցույց տված օգնության շնորհիվ է, ավելի ամրապնդվեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, որը Լենինը համարում էր մեր Հայրենիքի և ռևոլյուցիայի բախտի համար կարևոր գործոններից մեկը։

Պարտիայի ղեկավարությամբ 1954 թվականին ցանքատարածությունը 1950 թվականի համեմատությամբ, երկրում աճեց 13 տոկոսով։ 1954 թվականին երկրի մի շարք մարզերում (Արևմտյան Սիբիր, Ալթայ, Ղազախական ռեսպուբլիկա) հերկված է 17 միլիոն հեկտար խամ ու խոպան հող։ Հաջողություններ ձեռք բերվեցին նաև անասնաբուծության զարգացման գործում։ Միայն



անցյալ տարի կովերի գլխաքանակը, համեմատած 1953 թվականի հետ, աճել է 3 միլիոնով։ Բայց պետք է նշել, որ անասնաբուծության զարգացման տեմպը դեռևս հետ է մնում մեր ժողովրդական տնտեսության զարգացման ընդհանուր տեմպերից։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսության ուժն ու կենսունակությունը դրսևորվեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում։ Լենինը ուսուցանում էր, որ աշխատանքի արտադրողականությունը վերջին հաշվով ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար։ Մեր երկրի աշխատավորները սրբությամբ կենսագործելով հանճարեղ առաջնորդի ցուցումները, օր-օրի բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը, բարելավում թողարկվող արտադրանքի որակը։ Սակայն հարկ կա նշել, որ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում աշխատողները անբավարար են կենսագործում լենինյան պահանջը։ Թույլ են պայքարում արտադրողականության բարձրացման համար։ Դեռևս մեզ մոտ շատ մեծ են անարտադրողական ծախսերը, հատկապես կառավարչական ապարատի պահպանման ծախսերը։

Կոմունիստական պարտիան և Սովետա-

կան կառավարությունը հետևողականորեն կատարում են լենինյան այն դրույթը, որ հնարավոր է երկու սիստեմների՝ սոցիալիստական և կապիտալիստական սիստեմների երկարատև խաղաղ գոյակցությունը։ Սովետական Միության հետ ձեռք-ձեռքի տված խաղաղության համար պայքար են մղում չին մեծ ժողովուրդը և դեմոկրատական երկրների ժողովուրդները։ Խաղաղության և դեմոկրատիայի հզոր լագերը իր մեջ միավորում է ավելի քան 900 միլիոն մարդ։ Սոցիալիստական լագերի ժողովուրդները խաղաղություն հաստատելու իրենց միասնական ու անխախտ կամքը արտահայտեցին Եվրոպայում խաղաղությունն ու անվտանգությունը ապահովելու համար վերջերս Մոսկվայում գումարված եվրոպական պետությունների ներկայացուցիչների խորհրդակցությունում։ «Մեր ժողովուրդները,— ասված է Մոսկովյան խորհրդակցության դեկլարացիայում,— ցանկանում են հաշտ ու խաղաղ ապրել և բարեկամական հարաբերություններ ունենալ բոլոր մյուս ժողովուրդների հետ։ Հենց այդ պատճառով էլ, այսուհետև ևս ամեն կերպ պաշտպանելով խաղաղության և ընդհանուր անվտանգության շահերը, նրանք կանեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է իրենց զարգաց-



ման հետագա խաղաղ ուղին և իրենց պետությունների պատշաճ անվտանգությունն ապահովելու համար»։

Բայց սոցիալիզմի լագերի ժողովուրդները չեն կարող հաշվի չառնել, որ ԱՄՆ-ի, Անգլիայի և մյուս կապիտալիստական երկրների կառավարող շրջանները հաշվի չառնելով իրենց երկրների ժողովրդական լայն մասսաների խաղաղասիրական նպատակները, ձգտում են սանձազերծել նոր, երրորդ համաշխարհային պատերազմ, կազմակերպում են ագրեսիվ բլոկներ, վերածնում արևմտագերմանական միլիտարիզմը-վերմախտը, որպեսզի այն դարձնեն իրենց հարվածային ուժը ընդդեմ սոցիալիստական լագերի պետությունների։ Հաշվի առնելով ԱՄՆ-ի և արևմտաեվրոպական մի քանի երկրների նոր պատերազմ նախապատրաստելու ռազմատենչ ձգտումները, սոցիալիզմի լագերի երկրները իրենց ջանքերն ուղղելով ժողովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա վերելքին, դրա հետ մեկտեղ հոգատարություն են ցուցաբերում իրենց պաշտպանունակությունն ամրապնդելու նկատմամբ։

Սովետական Միությունը խաղաղության հզոր փարոսն է։ Սոցիալիզմի երկրների ժողովուրդները հանդես են գալիս խաղաղու-

թյան համար մարտնչողների առաջին շարքերում։

Ամերիկա-անգլիական ավանտյուրիստ իմպերիալիստների պլանները կձախողվեն նույնպես, ինչպես ձախողվեցին նրանց նախորդի՝ Հիտլերի պլանները։

Մարքսի—Էնգելսի—Լենինի—Ստալինի ամենահաղթ ուսմունքը ամբողջ աշխարհի աշխատավորների ուղեցույց աստղն է, խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի համար նրանց արդարացի պայքարում։ Մեր երկրի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, լենինյան ուղիով, վստահորեն ընթանում են դեպի կոմունիզմի վերջնական հաղթանակը։

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՇԽԱՏԵՆՔ ՄՈՍԿՎԱՑԻՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

Լենինականի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողները արձագանքելով Մոսկվա քաղաքի ձեռնարկությունների կոլեկտիվների կոչին, սոցիալիստական լայն մրցություն են ծավալել հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։

Արդեն մի շարք ձեռնարկություններ գերազանց ցուցանիշներով են կատարել տարեկան արտադրական պլանները, բարելավել են թողարկվող արտադրանքի որակը և իջեցրել ինքնարժեքը։ Անցյալ տարվա 11 ամիսների ընթացքում, նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքն աճել է 8 տոկոսով։ Այդ նույն ժամանակաշրջանում բամբակյա գործվածքների արտադրությունը աճել է 11 տոկոսով, մանվածքինը՝ 2,5, գուլպա-նաս-

կումը՝ 4, տրիկոտաժեղենինը՝ 55, կոշկեղենինը՝ 14, մանկական հեծանիվներինը՝ 45 և կաթնամթերքինը՝ 58 տոկոսով։

Քաղաքի արդյունաբերական 20 ձեռնարկություններ 1954 թվականի պլանը կատարել են 10—11 ամսում։

Աշխատանքի հրաշալի օրինակ է ցույց տալիս Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի կոլեկտիվը։ Այստեղ աշխատանքի արտադրողականությունը 1954 թվականին 1953 թվականի համեմատությամբ, բարձրացել է 18 տոկոսով, զգալիորեն իջել է արտադրանքի ինքնարժեքը, ավելացել առաջին տեսակի արտադրանքի թողարկումը։ Միայն 1954 թվականի ընթացքում ֆաբրիկայի հիմնական ցեխերում տեղադրվել և շահագործման են հանձնվել տարբեր տիպի մոտ 200 մեքենա։ Դրա շնորհիվ բարելավվել է մանվածքի որակը։ Ֆաբրիկայի ագիտատորները պարբերաբար մասսայականացնում են սոցիալիստական մրցության առաջավորների փորձը, ունկնդիրներին մանրամասնորեն պատմում են, թե նրանք աշխատանքային ինչպիսի ձևերով ու միջոցներով են կարողացել հասնել արտադրական բարձր ցուցանիշների։ Պարտկազմակերպության բյուրոն հաճախակի քննության է առնում սոցմրցության արդ-



յունքները և անհրաժեշտ նյութեր տալիս ագիտատորներին՝ զրույցներ անցկացնելու համար։

Տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունում արտադրական բարձր ցուցանիշների են հասել շոգեքարշային, վագոնային դեպոների, երկաթգծի 14-րդ ուղեմասի, կայարանի, մեխանիկական գործարանի, վերանորոգման-վերականգնման կոմբինատի և Լենգէսի կոլեկտիվները։

Մոսկվացիների օրինակով ստանձնած պարտավորությունները գործի վերածելու համար եռանդուն աշխատանք է կատարում վագոնային դեպոյի կոլեկտիվը, որը երկու ամիս շուտ է կատարել վագոնների հիմնական նորոգման տարեկան առաջադրանքը։ Խնայողության ռեժիմի խստագույն պահպանումը, տեխնոլոգիայի անընդհատ կատարելագործումը և նորագույն առաջավոր մեթոդների կիրառումը կոլեկտիվին հնարավորություն տվին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 13 տոկոսով, ինքնարժեքը իջեցնել 10 տոկոսով։ Երիտասարդ բանվորների տեխնիկական ուսուցման գործը լավ կազմակերպելու շնորհիվ մասսայական բնույթ է կրում գյուտարարությունն ու





ռացիոնալիզացիան։ Բավական է նշել, որ միայն 1954 թվականի ընթացքում արտադրության մեջ ներդրվել է ավելի քան 30 նորարարական առաջարկություն։ Դեպոյում աշխատող յուրաքանչյուր 5 բանվորից մեկը ռացիոնալիզատոր է։ Ճանաչված նորարար է հավաքման ցեխի երիտասարդ վարպետ Վոլոդյա Մկրտչյանը։ Նա իր հնգամյա առաջադրանքը կատարել է ժամկետից մեկ ու կես տարի շուտ։ Շարունակ բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, ամեն մի վագոն նորոգելիս երիտասարդ վարպետը տնտեսում է մինչև 10 կիլոգրամ պտուտակ, 0,3 խորանարդ մետր անտառանյութ և 2 կիլոգրամ տարբեր տրամաչափի մեխ։

Սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունը պատվով է կատարում նաև շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը, որը 20—40 տոկոսով գերակատարել է անցած տարվա 11 ամսվա առաջադրանքը։ Դեպոյի պարտիական կազմակերպության ղեկավարությամբ ագիտատորները մեքենավարների բրիգադներում արմատավորում են ծանրաքարշ գնացքների տեղափոխման առաջավոր փորձը։

Ներքին ռեզերվների հաշվին արտադրանքի



թողարկումը ավելացնելու և ասորտիմենտը ընդարձակելու գործում յուրջ նվաճումների են հասել մեխանիկական գործարանի աշխատողները։ Գործարանի մարկան կրող քար տաշող և անտառանյութ մշակող հաստոցները մեծ հաջողությամբ օգտագործվում են ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպություններում և կոլտնտեսություններում։

Արտադրական պլանները գերակատարելու հետ միասին քաղաքի շատ ձեռնարկություններ անընդհատ բարելավում են թողարկվող արտադրանքի որակը։ Արտադրանքի գերազանց որակի համար սոցիալիստական գործարար մրցություն են ծավալել 700 բրիգադա, որոնցում ընդգրկված են մոտ վեց հազար բանվոր ու բանվորուհի։ Համապատասխան մինիստրությունների հրամանով այդ բրիգադներից 112-ին շնորհված է «Գերազանց որակի բրիգադա» պատվավոր կոչում։

Պետական պլանները հաջողությամբ կատարելու գործին մեծ չափով նպաստում է բարեկամական այն մրցությունը, որը տրադիցիոն կերպով շարունակվում է անդրկովկասյան ռեսպուբլիկաների երեք քաղաքների՝ Լենինականի, Կիրովաբադի և Քութաիսիի

արդյունաբերության և տրանսպորտի աշխատողների միջև։ Մրցակից ֆաբրիկաների ու գործարանների պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, կարևոր նշանակություն տալով այդ մրցությանը, կազմակերպում են դելեգացիաների փոխադարձ այցելություններ, ամփոփում աշխատանքի արդյունքները, կատարում առաջավոր փորձի փոխանակում։

Լենինականի արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի աշխատողները ուժ և եռանդ չեն խնայի, որպեսզի հաղթանակով դուրս գան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական մրցությունից։

---



# ՋՐՈՒՅՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷԼԵԿՏՐԱՄԵՔԵՆԱՇԻՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նպատակ դրեցին մեր երկիրը հետամնաց գյուղատնտեսական երկրից դարձնել առաջավոր ինդուստրիալ երկիր։ Դրա համար նախ և առաջ պետք էր զարկ տալ ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացմանը։ Առաջ քաշվեց երկրի էլեկտրիֆիկացման կարևորագույն հարցը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1920 թվականին կազմվեց Ռուսաստանի էլեկտրիֆիկացիայի պլանը, որը և դրվեց մեր երկրի սոցիալիստական արդյունաբերության և շինարարության հիմքում։

Այժմ Սովետական Միության էլեկտրաէներգիայի արտադրանքը, համեմատած նա-

խառևոլյուցիոն Ռուսաստանի արտադրանքի հետ, մի քանի տասնյակ անգամ ավելացել է։

Արտադրված էլեկտրաէներգիան աշխատատար պրոցեսներին հասցնելու համար հարկ եղավ հիդրոէլեկտրակայաններ և ջերմային էլեկտրակայաններ կառուցելու հետ զուգընթաց՝ զարկ տալ նաև էլեկտրամեքենաշինական արդյունաբերության զարգացմանը։ Արտադրության բոլոր ճյուղերում՝ լինի դա գործարան, ֆաբրիկա, հանք, մեքենա-տրակտորային կայան և այլն, մեխանիզմները, հաստոցներն ու ագրեգատները աշխատացնելիս օգտվում են էլեկտրական շարժիչներից։

Էլեկտրատեխնիկան լայնորեն կիրառվում է տրանսպորտում, կապում, գյուղատնտեսության մեջ։ Մեծ տարածում է գտել էլեկտրատեխնիկան նաև բժշկության մեջ։ Ռենտգենյան ճառագայթների միջոցով հնարավոր է տեսնել մարդու ներքին օրգանները, բուժել զանազան հիվանդություններ։ Տարեցտարի նոր հեռանկարներ են բացվում էլեկտրատեխնիկայի հետագա զարգացման ճանապարհին։

Վերջին տասնամյակի ընթացքում Հայաստանում մեծ զարգացում ստացավ էլեկտրամեքենաշինական արդյունաբերությու-



նը։ Կառուցվել և շահագործման են հանձնվել Հայէլեկտրո, էլեկտրատեխնիկական, Կաբելի, էլեկտրաճշգրիտ չափիչների, էլեկտրավերանորոգման, էլեկտրալամպերի գործարանները և այլն։

Այդ գործարաններում արտադրվում են էլեկտրալամպերից սկսած մինչև հզոր տրանսֆորմատորներ։ Երևանի Կաբելի գործարանը հազարավոր կիլոմետրերով արտադրում է զանազան էլեկտրական լարեր և կաբելներ, որոնց միջոցով էլեկտրաէներգիան փոխանցվում է ցանկացած վայրը։ Գործարանում արտադրվում են էլեկտրականության համար լարեր, զանազան ռետինապատ կաբելներ, էլեկտրական շարժիչների, գեներատորների և տրանսֆորմատորների փաթաթման համար պղնձալարեր և այլն։ Գործարանում աշխատանքային բոլոր պրոցեսները ենթարկված են մեխանիզացիայի, սկըսած հատուկ մեքենաների վրա բարակ պղնձալարեր պատրաստելուց մինչև հզոր ուժային կաբելների պատրաստումը և ռետինապատումը։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը արտադրում է մեր երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար էլեկտրամոտոռներ, էլեկտրազոդման

տրանսֆորմատորներ, շարժական էլեկտրակայաններ, ուժային տրանսֆորմատորներ և այլն։ Էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանն արտադրում է արդյունաբերական ձեռնարկությունների, էլեկտրակայանների համար շատ կարևոր էլեևտրաչափիչ գործիքներ և ապարատուրա-վոլտմետր, ամպերմետր և այլն։

Մեծ տեղ է գրավում այդ գործարաններում ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրությունը։ Հայէլեկտրագործարանում արտադրվում են լուսամփոփներ, էլեկտրաարդուկներ, որոնք իրենց բարձր որակով և արտաքին գեղեցիկ ձևավորմամբ արժանացել են սպառողների գովասանքին։ Այս տարվանից այդ գործարանում սկսվելու է նաև նոր կոնստրուկցիայի էլեկտրական լվացքի մեքենաների թողարկումը։

Էլեկտրալամպերի գործարանը դեռ անցյալ տարվանից սկսել է արտադրել տոնածառի ապակյա գեղեցիկ զարդարանքներ։ Էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանը թողարկում է կենցաղային պիտույքներ, ինչպես, օրինակ, բնակարաններում էլեկտրաէներգիան խնայողաբար ծախսելու և էլեկտրական լարերի կարճ միացումից առաջացած հրդեհները կանխելու ավտոմատներ և այլն։



Հայաստանի էլեկտրատեխնիկական արդյունաբերության բուռն զարգացման մասին կարող է վկայել այն փաստը, որ ռեսպուբլիկայում գյուղական որևէ հիդրոէլեկտրակայան կառուցելու համար վերը նշված գործարանները կարող են բոլոր անհրաժեշտ մեքենաները և նյութերը մատակարարել։ Այսպես, գյուղական էլեկտրակայանները սարքավորելու համար Երևանի հիդրոտուրբինների գործարանը կարող է տալ տուրբիններ, Հայէլեկտրագործարանը՝ գեներատորներ և տրանսֆորմատորներ, Կաբելի գործարանը՝ կաբելներ և էլեկտրական լարեր, էլեկտրալամպերի գործարանը՝ էլեկտրական լամպեր, իսկ էլեկտրաճշգրիտ չափիչների գործարանը՝ զանազան սարքավորումներ և ապարատներ։

Եթե որևէ կոլտնտեսությունում, գեոլոգիական էքսպեդիցիայում, գործարանում կամ ֆաբրիկայում, որոնք հեռու են գտնվում էներգետիկ կենտրոններից և չունեն ջրային կամ ջերմային էներգետիկ պաշարներ, բայց անհրաժեշտ է նրանց էլեկտրաէներգիա մատակարարել, այդ դեպքում հանդես են գալիս շարժական էլեկտրակայանները, որոնց միջոցով էլեկտրաէներգիա է մատակարարվում։ Շարժական էլեկտրակայաններն աշխատում են դիզելային շարժիչի օգնությամբ, հեղուկ վառելիքի միջոցով։

Շարժական մեկ էլեկտրակայանի միջոցով կարելի է լրիվ կերպով լուսավորել մեկ կոլտնտեսություն և էլեկտրիֆիկացնել գյուղատնտեսական աշխատանքների մեծ մասը։ Այդ շարժական էլեկտրակայանը կարող է 1—2 ամսում կատարել այնքան աշխատանք, որքան կկարողանային կատարել կոլտնտեսության բոլոր աշխատողները մեկ տարում։

Տարեցտարի ռեսպուբլիկայում աճում է էլեկտրատեխնիկական արդյունաբերության չափը և որակը։ Բոլոր գործարանների արտադրանքը և ասորտիմենտը վերջին 3—4 տարվա ընթացքում կրկնապատկվել և եռապատկվել է։

Առաջիկա տարիներում նախատեսվում է էլեկտրամեքենաշինական գործարանի արտադրական տարածությունների զգալի լայնացում, արտադրանքի չափի և ասորտիմենտի ավելացում։ Հատկապես ավելանալու է ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրությունը։

Մեր ռեսպուբլիկայի էլեկտրաարդյունաբերության գործարաններում աճել և մեծացել են հազարավոր որակյալ բանվորներ ու բանվորուհիներ, ինժեներներ և տեխնիկներ, որոնք ի վիճակի են կատարելու իրենց առջև դրված բոլոր խնդիրները։

---

## ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

### (Թվեր և փաստեր)

Չեխոսլովակյան ռեսպուբլիկան պատմական կարճ ժամանակաշրջանում չտեսնված հաջողություններ ձեռք բերեց ժողովրդական տնտեսության զարգացման գործում։ Չեխոսլովակիայի աշխատավորները, իրենց հարազատ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեցին առաջին հնգամյա պլանը, որով արդյունաբերության արտադրանքը նախապատերազմյան ժամանակվա համեմատությամբ գերազանցեց ավելի քան 2 անգամ։

★ Միայն հնգամյակի տարիներին արդյունաբերության ու տրանսպորտի զարգացման համար ներդրվել է 83,2 միլիարդ կրոն (100 կրոնը հավասար է 55 ռուբլի 56 կոպեկի)։

★ Հնգամյակի տարիներին արագ թափով զարգացել է ծանր արդյունաբերությունը, հատկապես մեքենաշինությունը, որի արտադրանքը 1948 թվականի համեմատությամբ,

աճել է 3,3 անգամ։ Հնգամյակի վերջում Չեխոսլովակիան էլեկտրաէներգիայի արտադրությամբ անցել է Ֆրանսիայից և Իտալիայից, իսկ պողպատի արտադրությամբ՝ Շվեդիայից, Ֆրանսիայից և համարյա Անգլիայից։

Այժմ էլեկտրիֆիկացված է երկրի բնակելի կետերի 97 տոկոսը։ Բոլոր բնակելի կետերը միմյանց հետ կապված են հեռախոսային կապերով։

★ Ռեսպուբլիկայի ազգային եկամուտը հնգամյակի ընթացքում ավելացել է 59 տոկոսով։ Ժողովրդական տնտեսության մեջ սոցիալիստական սեկտորի արտադրանքի տեսակարար կշիռը կազմում է 92 տոկոս։

★ Մանր արդյունաբերության զարգացման գործում չտեսնված հաջողություններ է ձեռք բերել Սլովակիան։ Կապիտալիզմի օրոք այդ ագրարային հետամնաց մարզը այժմ դարձել է զարգացած ինդուստրիալ մարզ։ Սլովակիայի արդյունաբերության արտադրանքի ծավալը, նախապատերազմյանի համեմատությամբ, աճել է ավելի քան 4,5 անգամ։

★ Չեխոսլովակիայում, 1949 թվականի սկզբից մինչև 1953 թվականի վերջը, բանվորների և ծառայողների թիվն աճել է մեկ



երրորդով։ Կանայք կազմում են բանվոր-ծառայողների 35,4 տոկոսը։

★ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, երկրի բանվոր դասակարգի ակտիվ օգնությամբ, գյուղացիները ձեռնամուխ են եղել գյուղատնտեսական միասնական կոոպերատիվների կազմակերպմանը։ Գյուղացիության 47 տոկոսն ընդգրկված է կոոպերատիվներում, որոնք մշակում են երկրի վարելահողերի 33 տոկոսը, իսկ պետական տնտեսությունների հետ միասին նրանք մշակում են երկրի հողային տարածությունների 43 տոկոսը։

★ Գյուղատնտեսության զարգացմանը, հատկապես գյուղատնտեսական միասնական կոոպերատիվներին, լուրջ օգնություն են ցույց տալիս երկրում կազմակերպված 256 մեքենա-տրակտորային կայանները, որոնք ունեն 14 հազար տրակտոր, 1.200 կոմբայն և այլ մեքենաներ։

★ 1953 թվականին Չեխոսլովակիայի գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կազմել են 1 միլիարդ 665 միլիոն կրոն։

★ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդի կյանքի բարելավման, աշխատավորների նյութական, կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացման գործում։

ժողովրդական տնտեսության սոցիալիստական սեկտորում աշխատավարձը 1953 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, միջին հաշվով ավելացել է 34 տոկոսով։

★ Վերջին տարվա ընթացքում երկրում 3 անգամ կատարված է գների իջեցում, որը ընդհանուր առմամբ բնակչությանը տվել է 10,7 միլիոն կրոնի օգուտ։ Բարձրացել է ժողովրդի սնողունակությունը։ 1953 թվականին 36 տոկոսով միս, 39,4 տոկոսով հաց, 32,2 տոկոսով յուղ ավել է վաճառվել, քան 1949 թվականին։

★ Օրենքով վերացված է գիշերային և արտաժամյա աշխատանքը։ Բոլոր աշխատողները ստանում են 2—4 շաբաթվա արձակուրդ, պահպանելով աշխատավարձը։ 1953 թվականին Չեխոսլովակիայի սանատորիաներում ու հանգստյան տներում հանգստացել և բուժվել են 300 հազար մարդ։

★ Պետության կողմից տարեցտարի ավելանում են սոցիալական ապահովության գծով տրվող նպաստներն ու կենսաթոշակները։ 1953 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, այդ նպատակին հատկացվող գումարները ավելացել են 71 տոկոսով։

Ժողովրդի նյութական պայմանների բա-



րելավման շնորհիվ արագորեն աճում է բնակչությունը։ Չեխոսլովակիայում ծնունդը 1952 թվականին, 1937 թվականի համեմատությամբ, ավելացել է 38 տոկոսով։ Բնակչության ընդհանուր մահացությունը կրճատվել է 13 տոկոսով, իսկ երեխաների մահացությունը կրճատվել է մոտ 50 տոկոսով։

★ 1954 թվականին բնակելի շինարարությանը տրամադրվել են 37 տոկոսով ավելի միջոցներ։

★ 1948 թվականին երկրում եղել է 22 բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ 1953 թվականին այն հասել է 39-ի։ 1937 թվականին բուհերում սովորել են 25 հազար հոգի, իսկ 1953 թվականին ուսանողների թիվը ավելացել է 47 հազար մարդով։

Չեխոսլովակյան ժողովուրդը, ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ, կառուցում է սոցիալիզմ և ակտիվորեն պայքարում կայուն և երկարատև խաղաղության համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԵՎՐՈՊԱՅԻ ԿՈԼԵԿՏԻՎ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## Վ. ՎԱՍԻՆ

*Խաղաղության և միջազգային կոլեկտիվ անվտանգության համար մղվող պայքարը հանդիսանում է Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր գիծը։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ այդ քաղաքականությունը բխում է սովետական սոցիալիստական կարգի բուն էությունից, որին օտար է ուրիշի տերիտորիաները զավթելու ցանկությունը և այլ ժողովուրդների անկախության դեմ ոտնձգություն անելը։*

*Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը ելնում է երկու սիստեմների՝ սոցիալիստականի և կապիտալիստականի խաղաղ համագոյակցության հնարավորությունից։ Սովետական պետության ջանքերը միշտ ուղղված են եղել դեպի*



*լայն գործարար կապերի հաստատումն ու զարգացումը բոլոր երկրների հետ, անկախ նրանց հասարակական և տնտեսական կարգից։*

*Սովետական կառավարությունը նախաձեռնություն հանդես բերեց ամերիկյան ագրեսիվ շրջանների կողմից Կորեայում սանձազերծված պատերազմի դադարեցման վերաբերյալ բանակցություններում— Բեռլինի և Ժնևի խորհրդակցությունների հրավիրման գործում։ Կորեայում և Հնդկաչինում արյունահեղ պատերազմների դադարեցման շնորհիվ ուղի հարթվեց բանակցությունների միջոցով մյուս վիճելի հարցերի լուծման համար։ Այս բոլորը հանգեցրեց միջազգային հարաբերությունների լարվածության նշանակալի թուլացմանը։*

*Սակայն խաղաղության և վիճելի հարցերի խաղաղ լուծման քաղաքականությունը, որ տարվում է Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների կողմից, հանդիպում է ամերիկյան իմպերիալիստների և նրանց կողմնակիցների դիմադրությանը։*

*Հրաժարվելով պատերազմի ժամանակ իրագործվող համաձայնեցված որոշումների քաղաքականությունից, ԱՄՆ-ի ագրեսիվ շրը-*

ջաններն անց են կացնում ամեն տեսակի փակ բլոկների և ռազմական խմբավորումների ստեղծման քաղաքականություն, ուղղված ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Այդ հատկապես ցայտուն կերպով երևան է գալիս արդի միջազգային կացության ամենակարևոր հարցի՝ գերմանական հարցի լուծման նկատմամբ ունեցած մոտեցման մեջ։

ԱՄՆ-ը և արևմտյան մյուս տերությունները համառորեն մերժում են գերմանական պրոբլեմի խաղաղ լուծման վերաբերյալ սովետական առաջարկությունները։ Նրանք խափանեցին Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի նախապատրաստումն արագացնելու վերաբերյալ հարցի քննարկումը համագերմանական ժամանակավոր կառավարություն ստեղծելու մասին։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու վերաբերյալ սովետական առաջարկությանը նորից բացասաբար վերաբերվեցին։

Դրա փոխարեն ամերիկյան դիվանագիտությունը փորձեց կազմավորել այսպես կոչված «եվրոպական պաշտպանական միավորում», որի հարվածային ուժը պետք է



դառնար վերածնված և սպառազինված գերմանական միլիտարիզմը։

«Եվրոպական բանակ» ստեղծելու ամերիկյան ծրագրի ձախողումից հետո, ամերիկյան դիվանագիտությունը նոր փորձեր ձեռնարկեց գերմանական միլիտարիզմը վերակենդանացնելու համար, այս անգամ նոր շիրմայի տակ։ Այժմ հիտլերյան վերմախտը ցանկանում են վերականգնել «Արևմտաեվրոպական միության» ցուցանակի ներքո։

Այդ նպատակով ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Կանադայի և արևմտյան մի քանի այլ երկրների ներկայացուցիչների Լոնդոնում ու Փարիզում հապճեպ հրավիրված խորհրդակցություններում մշակվեցին ու ստորագրվեցին համաձայնագրեր Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման և նրան Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ ներգրավելու մասին։ Այսպիսով, այդ համաձայնագրերով Եվրոպայում ստեղծվում է փակ ռազմական խմբավորում, որն իր մեջ ընդգրկում է արևմտագերմանական ռևանշիստներին, որոնց զինված ուժերն արդեն առաջին ստադիայում բաղկացած կլինեն կես միլիոնանոց բանակից։ Ընդորում, արևմտագերմանական միլիտարիստները չեն թաքցնում, որ նրանք ձգտում են իրենց բա-

նակի թվի հետագա ավելացմանը և մոտ ապագայում 12-ից մինչև 30, իսկ հետո էլ մինչև 60 դիվիզիայի հասցնելուն։ Բացի դրանից, համաձայն այդ համաձայնագրերի, արևմտագերմանական բանակը հնարավորություն է ստանում իր սպառազինության մեջ ունենալու ատոմային զենք։

«Արևմտաեվրոպական միության» ոգեշընչողներն ու կազմակերպիչները փորձելով շփոթության մեջ գցել համաշխարհային հասարակական կարծիքը, կեղծորեն հաստատում են, որ իբր Փարիզի համաձայնագրերի վավերացումը ոչ մի սպառնալիք չի բերում խաղաղության գործին, որ արևմտագերմանական ռևանշիստների ագրեսիան կարելի է կանխել ամեն տեսակի «երաշխիքների» և սահմանափակումների միջոցով։

Ուժգնորեն քարոզվում է նաև այն թեզը, որ Փարիզի համաձայնագրերի վավերացումից հետո ևս հնարավոր է բանակցություններ վարել Սովետական Միության հետ գերմանական հարցի վերաբերյալ։

Դժվար չէ հասկանալ, որ խոսակցությունները «երաշխիքների» մասին ավելին չեն, քան դատարկ հնչյուն։ Նման «երաշխիքներ» տրվել են նաև անցյալում։ Բայց այդ չի խանգարել գերմանական միլիտարիստներին



սանձազերծելու ագրեսիվ պատերազմներ։ Ինչ վերաբերում է այն թեզիսին, թե համաձայնագրերի վավերացումից հետո ևս կարելի է շարունակել բանակցություններն ու համագործակցությունը Սովետական Միության հետ, ապա սովետական մարդիկ և բոլոր խաղաղասեր ժողովուրդներն այն կարծիքին են, որ Լոնդոնի և Փարիզի համաձայնագրերը փակում են գերմանական հարցի խաղաղ լուծման ուղիները, արձակում են արևմտագերմանական ռևանշիստների ձեռքերը, ուժեղացնում են Եվրոպայի ժողովուրդների անվտանգության սպառնալիքը։

Այս պայմաններում, լեհական և չեխոսլովակյան կառավարությունների հետ համապատասխան կոնսուլտացիայից հետո, Սովետական կառավարությունը 1954 թվականի նոյեմբերի 13-ի նոտայում առաջարկեց բոլոր եվրոպական երկրներին, ինչպես նաև ԱՄՆ-ին, Փարիզում կամ Մոսկվայում նոյեմբերի 29-ին հրավիրել խորհրդակցություն եվրոպական կոլեկտիվ անվտանգության հարցերի վերաբերյալ։

Սովետական առաջարկությունը Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու հարցերի վերաբերյալ համաեվ-

ռոպական խորհրդակցության հրավիրելու մասին ջերմ արձագանք գտավ խաղաղասեր ժողովուրդների լայն շրջանում։

Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր եվրոպական երկրները գերմանական միլիտարիզմի վերածնում թույլ չտալու ձգտման մեջ միաձուլված, տվեցին իրենց համաձայնությունը խորհրդակցությանը մասնակցելու։

Ինչ վերաբերում է արևմտյան երկրների կառավարություններին, ապա ԱՄՆ-ի ուղղակի ճնշման տակ, հրաժարվեցին մասնակցել խորհրդակցությանը։ Այդ մեկ անգամ ևս ակնառու կերպով ցույց տվեց արևմտյան տերությունների կառավարող շրջանների ձգտումը՝ խույս տալու Եվրոպայում խաղաղության և անվտանգության կենսականորեն կարևոր հարցերի քննարկումից։

1954 թվականի նոյեմբերի 29-ից մինչև դեկտեմբերի 2-ը Մոսկվայում կայացած եվրոպական երկրների խորհրդակցությանը մասնակցեցին ՍՍՌՄ-ի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի ներկայացուցիչները։ Որպես դիտորդ մասնակցեց Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ներկայացուցիչը։ Խորհրդակցությանը մասնա-



կից պետությունները միահամուռ կերպով արտահայտեցին Եվրոպայում խաղաղության և կոլեկտիվ անվտանգության ամրապնդմանն աջակցելու իրենց ձգտումը։

Խորհրդակցության եզրափակիչ նիստում ընդունված դեկլարացիայում առավելագույն պարզությամբ լուսաբանված են Եվրոպայի ներկա կացության հիմնական հարցերը։

Դեկլարացիայում նշվում է, որ Փարիզի համաձայնագրերի վավերացման դեպքում Արևմտյան Եվրոպայում իշխող դիրք կգրավեն արևմտագերմանական ռևանշիստների զինված ուժերը, որոնց ձեռքում կլինի ատոմային զենք և որ հասարակական կարծիքը բթացնելու նպատակով հնարված ոչ մի «երաշխիք» չի խանգարի գերմանական միլիտարիզմի հետագա աճին և Արևմտյան Գերմանիայում ռազմական դիկտատուրա հաստատելուն։

Ելնելով դրանից, խորհրդակցության մասնակից եվրոպական երկրներն արեցին անխախտ եզրակացություն՝ Փարիզի համաձայնագրերի վավերացումն իրենից կներկայացնի մի ակտ՝ ուղղված Եվրոպայում խաղաղության պահպանման դեմ և նոր պատերազմի սանձազերծման օգտին։

«Եվրոպայում իսկական անվտանգությու-

նը,— ասվում է Դեկլարացիայում,— կարող է ապահովվել միայն այն դեպքում, եթե եվրոպական որոշ պետությունների դեմ եվրոպական ուրիշ պետությունների ռազմական փակ խմբավորումներ ստեղծելու փոխարեն, ստեղծվի Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության սիստեմ։ Անվտանգության այնպիսի սիստեմը, որը հիմնված լիներ եվրոպական բոլոր պետությունների մասնակցության վրա՝ անկախ նրանց հասարակական ու պետական կառուցվածքից, հնարավորություն կտար միավորել եվրոպական պետությունների ջանքերը՝ Եվրոպայում խաղաղության ապահովման շահերի օգտին»։

Դրա հետ միասին, խորհրդակցության մասնակից պետությունները ամբողջ վճռականությամբ հայտարարեցին, որ նրանք թույլ չեն տա, որպեսզի դեպքերի զարգացումը նրանց հանկարծակիի բերի, և որ Փարիզի համաձայնագրերի վավերացման դեպքում նրանք ստիպված կլինեն ձեռք առնելու անհետաձգելի միջոցներ այն բանի համար, որպեսզի արևմտյան տերությունների ագրեսիվ բլոկի ռազմական ուժերին հակադրեն խաղաղասեր պետությունների միավորված հզորությունը։

Այնքան, որքան Լոնդոնի և Փարիզի հա-



մաձայնագրերը լրջորեն ուժեղացնում են նոր պատերազմի վտանգը, ապա սովետական ժողովուրդը, ինչպես և Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի ժողովուրդները պետք է հոգ տանեն իրենց սպառազինությունների հզորության ամրապնդման մասին, իսկ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան՝ իր ազգային զինված ուժերի ստեղծման մասին։ Եվրոպայի խաղաղասեր պետությունները պետք է համախմբեն իրենց ջանքերը, պետք է համատեղ կիրառեն բոլոր անհրաժեշտ միջոցները՝ հանուն իրենց անվտանգության ապահովման, հանուն խաղաղության պաշտպանության։

«Մեր ժողովուրդները,— ասվում է Դեկլարացիայում,— վստահ են իրենց ուժերին, իրենց անսպառ ռեսուրսներին. խաղաղության և սոցիալիզմի ուժերը դեռ երբեք այնքան հզոր և այնքան համախմբված չեն եղել, ինչպես այժմ։ Հարձակվելու, պատերազմ սանձազերծելու և մեր ժողովուրդների խաղաղ կյանքը խանգարելու բոլոր փորձերը խորտակիչ հակահարվածի կհանդիպեն։ Եվ այն ժամանակ մեր ժողովուրդները, հենվելով մյուս ժողովուրդների համակրանքի ու աջակցության վրա, ամեն ինչ կանեն, որ-

պեսզի ոչնչացնեն ագրեսիայի ուժերը և որպեսզի հաղթի մեր ճշմարիտ, արդար գործը։

Մեր ժողովուրդները ցանկանում են հաշտ ու խաղաղ ապրել և բարեկամական հարաբերություններ ունենալ բոլոր մյուս ժողովուրդների հետ։ Հենց այդ պատճառով էլ, այսուհետև ևս ամեն կերպ պաշտպանելով խաղաղության և ընդհանուր անվտանգության շահերը, նրանք կանեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է իրենց զարգացման հետագա խաղաղ ուղին և իրենց պետությունների պատշաճ անվտանգությունն ապահովելու համար»։

Սովետական Միության հետ «ուժի դիրքերից», այսինքն ռազմական սպառնալիքների և ուրիշ պետությունների վրա ամեն տիպի ճնշում գործադրելու եղանակով խոսելու փորձերը, անցյալում միշտ կրախի են մատնվել, դրանք առավել անհուսալի են ներկայումս, երբ մեծ Սովետական Միությունը հզոր Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների հետ մեկտեղ, ինչպես երբեք, վստահ է իր ուժերին և պատրաստ է մինչև վերջ պաշտպանել իր խաղաղ ապրելու իրավունքը։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանա խանգարել խաղաղա-



սեր ժողովուրդներին առաջ ընթանալու իրենց ընտրած սոցիալիզմի փառավոր ուղիով։ Եվ «եթե պահանջվի,— նշում է Վ. Մ. Մոլոտովը,— Սովետական Միությունը, իհարկե, կկարողանա ցույց տալ իր հզորությունը, կապացուցի իր գործի ճշմարիտ և արդար լինելը»։

Դեկլարացիայում առաջ քաշված դրույթները հավանություն և պաշտպանություն են ստացել Եվրոպայի բոլոր խաղաղասեր ժողովուրդների կողմից։ Սովետական երկրի բանվորները, կոլխոզնիկներն ու ինտելիգենցիան, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները անցկացվող միտինգներում միահամուռ կերպով հավանություն տալով դեկլարացիային, հայտարարում են, որ նրանում արտահայտված են խաղաղություն ցանկացող միլիոնավոր հասարակ մարդկանց խոհերն ու ցանկությունները։

Եվրոպական բոլոր երկրներում աճում է շարժումն ընդդեմ Փարիզի համաձայնագրերի վավերացման և կենսագործման։ Արևմտյան Եվրոպայի ժողովուրդներն իրենց կառավարություններից պահանջում են հրաժարվել «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությունից և կանգնել խաղաղ համագոր-

*ծակցության ուղու վրա, հրաժարվել Եվրոպային սպառնալիք հանդիսացող ռազմական բլոկներից և պաշտպանել եվրոպական բոլոր պետությունների կոլեկտիվ անվտանգության քաղաքականությունը, որը հետևողականորեն տարվում է Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների կողմից։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՄԵԾ ԼԵՆԻՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՈՒ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՂ ԵՎ ՂԵԿԱՎԱՐ

### Գրականություն

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1953*։

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— Լենինի մասին, *առանձին բրոշյուր Հայպետհրատ, 1952*։

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— Լենինի մահվան առթիվ, ճառ Սովետների Համամիութենական 2-րդ համագումարում, *Երկեր, հատոր 6, էջ 55—62, Հայպետհրատ, 1948*, Լենինը որպես ՌԿՊ կազմակերպիչ և առաջնորդ, *Երկեր, հատոր 4, էջ 341—352, Հայպետհրատ, 1948*, Բանվորներ և գեղջկուհիներ, հիշեցեք և կատարեցեք Իլյիչի պատգամները, *Երկեր, հատոր 7, էջ 3—4, 1949*։

*Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ.*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1954 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում*։

2. Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՊԱՏԳԱՄՆԵՐԸ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ

Գրականություն

*Վ. Ի. ԼԵՆԻՆ.*— Երիտասարդության Միությունների խնդիրները, *Երկեր, հատոր 31, էջ 343—366, Հայպետհրատ, 1952։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.*— Ճառ ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարում, *Երկեր, հատոր 11, էջ 74—87, Հայպետհրատ, 1952։*

3. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Գրականություն

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և Տեղական Սովետների ընտրությունների։

4. ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ

Գրականություն

*Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ.*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1954 թվա-*



*կանի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում։*

Մոսկվա քաղաքի ձեռնարկությունների սոցիալիստական մրցությունը հինգերորդ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 11-ի համարում։*

Ավելի լայնորեն ծավալել մրցությունը հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված նոյեմբերի 11-ի համարում։*

Հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված նոյեմբերի 16-ի համարում։*

5. ԳԵՐԱԶԱՆՑ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹՅԱՄԲ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԸ

Գրականություն

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.*— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72, Հայպետհրատ, 1952։*

ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին, ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953։*

Երկրում հացահատիկի արտադրության հետագա ա-

վելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1954 թ. մարտի 2-ին ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 6-ի համարում։*

Ընկեր Ն. Ս. Խրուշչևի զրույցը անգլիական գիտնական և հասարակական գործիչ Ջոն Բեռնալի հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

Հայկական ՍՍՌ առաջավոր բամբակագործների ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցների ԴԻՄՈՒՄԸ բամբակացան շրջանների կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, մեխանիզատորներին և գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

## 6. ԱՊԱՀՈՎԵՆՔ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԿՈՒՇՏ ԵՎ ՏԱՔ ՁՄԵՌՈՒՄԸ

### Գրականություն

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.*— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 61—63, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ.*— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, էջ 20—38։*



Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները, *առանձին հրատարակություն, Հայպետհրատ, 1953։*

Ապահովենք հանրային անասնապահության հետագա վերելքը ռեսպուբլիկայում, «Ս. Հ.»-ի *առաջնորդող հոդվածը, տպագրված 1954 թվականի № 268-ում։*

## 7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### Գրականություն

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.*— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *էջ 28—53, Հայպետհրատ, 1953։*

*Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ.*— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 37-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1954 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում։*

ՍՍՌՄ-ի, Լեհական ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Հունգարական ժողովրդական Ռեսպուբլիկայի, Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի, Բուլղարիայի ժողովրդական Ռեսպուբլիկայի և Ալբանիայի ժողովրդական Ռես-



պուբլիկայի Կառավարությունների ԴԵԿԼԱՐԱՑԻԱՆ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 3-ի համարում։*

Սովետական Կառավարության Նոտան Ֆրանսիայի, Անգլիայի և ԱՄՆ-ի կառավարություններին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 11-ի համարում։*

Սովետական Կառավարության Նոտան Ֆրանսիայի կառավարությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 18-ի համարում։*

Սովետական Կառավարության Նոտան Մեծ Բրիտանիայի կառավարությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թվականի դեկտեմբերի 22-ի համարում։*

---

Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 1** **1955 г.**

*ՎՖ 08195* *Պատվեր 1067* *Տիրաժ 8150*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։ 1955 թ., գինը 50 կ.։*